## ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

կազմակերպուած Փուա-Քոլոմպի Սահակ Մեսրոպ. Գրադարանի եւ Հ. Մ. Ը. Մ.-ի մասնաճիւղին կողմէ, այսօր կիրակի օր Արժանթէօյի մէջ: *Կը նախագահէ՝ Պ. ԶԱՏԻԿ ԽԱՆԶԱՏԵԱՆ*
*Կը խօսին՝ Պ. Պ. ՇԱՀԱՆ ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆ և ԿԱՐՕ ՈՒՇԱԳԼԵԱՆ*

Ճոխ պիւֆէ: Հաղորդակցութեան միջոց՝ կառ. Սէն Լազարէն շոգեկառք, փոքր տը Քլիշիէն 40 թիւ հանրակառք եւ Gare d'Enghienէն օթօպիւս առնել եւ իջնել կառ. տ'Արժանթէօյ:



---

ՀԱՅ ՀԵՂԻՆԱԿՆԵՐՈՒ
ՈՒՇԱԴՐՈՒԹԵԱՆ

Ցարագրութեանս մէջ, հիմնած եմ գրադարան մը «Մայիս 28» անունով, հայրենի գիւղս փոխադրելու (Բաշ-Գառնի) նըպատակով:

կը խնդրեմ բոլոր հայ գրողներէն եւ հրատարակիչներէն 1 2ական օրինակ նուիրել իրենց հրատարակութիւններէն, ճոխացնելու համար գրադարանս:

Հասցէ K. Kotcharian, Rue Borissova 70 Roustchouk (Bulgarie).



---


IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: E. SOUVIGNY




---

**ԱԺԱՆ ԵՒ ԱՆՄՐՑԵԼԻ ԳԻՆԵՐ**
(ԸՆՏՐՈՒԱԾ ԳԻՐՔԵՐ

50 ֆր.է վեր գիրք առնողին հարիւրին 10 զեղչ.

*Հացի համար (կազմուած) 35, Գէւթէկոր (417 էջ) 30, Իմ Ընկերը (Մաքսիմ Կորքի) 7.50, Անհետացած սերունդ 8, Գիւղաշխարհ 26, Տարագրի մը յուշատետրը 15, Կարօտ հայրենի 20, Քերթուածներ (Դուրեան) 5), Գոհարներ հայ գրականութեան (կազմուած) 30, Թէատրոն 10, Ոսկի աքաղաղ 10, Արտաշէս, Տաթեւան եւ Աստղ 25, Ապրիլ 11, 15, Ընկերը 15, Բոլին8, Հայերու բնաջնջումը 7.50, Էջեր իմ յուշերէն (գոր. Սեպուհ կազմուած) 60, Արտէն Լիւբէն (5 հատոր) 9, Շէրլոք Հոլմս (4 հատոր) 7, Պօսկոմա հովիւին գաղտնիքը (Շ. Հոլմս) 2, Լոնդոնի հովուաւէպը 8, Նամուսը 15, Ծամբուն վրայ 7.50, Ազատ վաճառականին կտակը 3, Ժամագործ Մինաս 2, Վարպետ բժիշկը 2, Արշէն մաւ ալան 4, Վերջուկէս պարտի ժառանգ Թացած մնտուկը 4, Խոշանոցին գիրքը 5, Երազահան 6, 8, Խոսակցութիւն՝ 2.50, 5, 7.50, Արարատ երգարան 25, Զայնագրեալ երգեր Սրուանձտեանցի, Քարտեր (գոր. Անդրանիկի, Ա. Միասնիկեանի, Մեծն Մուրատի, Անմահն Փիրպալի եւն.):*

*Փափաքեցէք մեր գրացուցակը ինչպէս նաեւ ձեր ուզած բոլոր գիրքերը:*

Դիմել՝ Mme A. Sévouni, 31 Rue Kléber, Issy-les-Moulineaux, (Seine), France.



IMPRIMERIE MASSIS - ÉDITIONS 208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: E. SOUVIGNY

բոլշեւիկները կանոնաւոր պայքար կազմակերպած են անգլ. ազդեցութեան դէմ։ Սնտուկները գործարանին կողմէ Մարսիլիա ղրկուեցան. Մաքսի վարչութիւնը հոն զրկեց զանոնք։ Ասոր վրայ Բասքին գնաց գտաւ Աֆղանիստանի դեսպանատան թարգման հրեայ Խայիմ Նաթանը եւ Պոլսեցի Քոհէն անուն ուրիշ հրեայ մը, որոնք Բասքինը ներկայացուցին դեսպան Ղուլամ Նապիլ խանի։ Այս վերջինը՝ շլացած իրեն առաջարկուած կաշառքէն, ընդունեց որ սնտուկները իր անունով ղրկուին։

Բասքին չէ վճարած թարգմանիչներուն հաշիւը եւ աներեւութացած է։

∴ Առջի օր խուզարկութիւն կատարուեցաւ Բասքինի Փարիզի բնակարանին մէջ, Քոնվանսիոն փողոց թիւ 19։ Տան մէջ կար միայն Բասքինի 16 տարեկան աղջիկը՝ Նատիա, որ յայտնեց թէ հայրը մէկ ամիսէ ի վեր ճամբորդութեան մէջ է եւ հասցէն չի գիտեր։ Տունէն գրաւուեցան մեծ քանակութեամբ թուղթեր։

## Կացութիւնը Աֆղանիստանի մէջ

Փէշավարէն կը հեռագրեն թէ Ամանուլլահ թագաւորի խորթ եղբայր Ինայէթուլլահ եւ ուրիշ երեք կուսակիցները խեղդամահ եղած են։ Աֆմրտիներու խմբակ մը միացած է Նատիր խանի եղբայր Սէրտար Հաշըմ խանի եւ կը քալէ Կարտէզի վրայ։

## Տաքը եւ ջուրի պակասը

Օրերէ ի վեր սպասուած փոթորիկը պայթեցաւ առջի օր ժամը 16·45ին եւ տեւեց մինչեւ ժամը 18։ Աւելի քան մէկ ժամ անընդհատ կայծակն ու որոտումը եւ ջրհեղեղը յիշեցնող անձրեւը սարսափի տակ պահեցին Փարիզի եւ արուարձանի բնակչութիւնը։ Հակառակ յորդառատ անձրեւին, ջերմութեան աստիճանը երբեք չիջաւ ու երէկ նոյն սաստկութեամբ շարունակուեցաւ տաքը։ Եթէ այսպէս շարունակուի, ջուրի պակասէն կը վախցուի։ Առջի օր 735,000 խորանարդ մեթր ջուր գործածուեցաւ Փարիզի մէջ՝ կոտրելով բոլոր մրցանիշները։ Ջուրի պակասը զգալի դարձած է հարաւային արուարձաններու մէջ՝ Ժանթիյիի, Արքէօյլ եւ Մոնրուժ։

∴ Անգլիոյ մէջ աւելի զգալի է ջուրի պակասը։ Վեց շաբաթէ ի վեր երաշտութիւն կը տիրէ։

### ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ ՍԷՆ ՔԼՈՒԻ ԱՆՏԱՌԸ

կազմակերպուած Հ. Յ. Դ. Իսի-լէ-Մուլինոյի Վռամեան ենթակոմիտէի կողմէ, Սէն Քլուի անտառը, այսօր կիրակի առաւօտ ժամը 10էն մինչեւ երեկոյեան ժամը 8ը։

Առաջնորդները պիտի սպասեն Pont de Sèvres եւ Pont de St. Cloud.

### ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ ՍԱՐՍԷԼԻ ՄԷՋ

*ԽԱՆԱՍՈՐԻ 32ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻՆ ԱՌԹԻՒ*

կազմակերպուած Հ. Յ. Դ. Հրայր խումբին կողմէ

Այսօր կիրակի առաւօտ ժամը 10էն մինչեւ իրիկուն

Hotel Beauséjourի պարտէզը

### ՆԱՒԱՍԱՐԴԵԱՆ ԽԱՂԵՐ

Հ. Մ. Ը. Մ.ի մարզական ախոյեանութեան տարեկան մրցումները (7րդ տարի), կազմակերպուած Փարիզի եւ շրջանի Հ. Մ. Ը. Մ.ի կողմէ. Stade de Parisի մէջ (Porte St. Ouen), այսօր կիրակի ժամը 2ին, մասնակցութեամբ Փարիզի, Գիյեանքուրի, Իթալիի, Պուա Քոլոմպի, Սարսէլի Հ. Մ. Ը. Մ.ի մասնաճիւղերու մարզիկներուն եւ սկաուտներուն և Դպրոցասէրի սանուհիներուն։

Տոմսեր՝ 5, 10 եւ 25 ֆրանք։

### ԱՅՑ ԱՆԴՐԱՆԻԿԻ ԳԵՐԵԶՄԱՆԸ Père Lachaise

Շ. Գարահիսարի հերոսամարտի 14րդ տարեդարձին առթիւ։ Նախաձեռնութեամբ Շ. Գարահիսարի եւ շրջանի «Քազմիկ» Հայր. Միութեան, այսօր կիրակի ժամը 3ին։ Բանախօսութիւններ եւ ուղերձներ։ Հրաւիրուած են Ազգ. բոլոր կազմակերպութիւններն ու կուսակցութիւնները։









IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: E. SOUVIGNY

ծաւորներ եւ պաշտօնեաներ, որոնց շատերը ձեռնակալ ունէին եւ չէին կրնար մնունդ առնել։

Վերջին օրերս ձերբակալուածները հարիւրներու կը հասնին։ Երկաթուղագծի ամբողջ երկայնքին սպիտակ պահակեան հրոսախումբեր կը կազմակերպուին՝ խորհրդային հող անցնելու համար։ Լուրեր կան թէ բազմաթիւ խումբեր կը յառաջանան դէպի խորհրդային սահմանագլուխը։

## Անգլիացւոց մարզպան Լորտ Լօյտ ձեռնէյ

Եգիպտոսի մարզպան Լորտ Ճորճ Լօյտի հրաժարականին առթիւ ծագած տագնապը փակուեցաւ աշխատաւորական դահլիճին յաղթանակով։ Պատասխանելով Պոլտուինի հարցապնդումին, արտաքին նախարար Հէնտըրսըն յայտարարեց թէ պահպանողական կառավարութեան օրով հինգ անգամ անհամաձայնութիւն ծագած էր մարզպանին եւ արտաքին նախարարին միջեւ։ 1926ին Լորտ Լօյտ չէր ուզեր որ Զաղլուլ փաշա վարչապետ ըլլայ. Չէմպըրլէյն կը յորդորէր չմիջամտել, սակայն մարզպանին տեսակէտը յաղթանակեց. 1927ին Լորտ Լօյտ կ՚ուզէր աւելցնել եգիպտ. երկաթուղիներու անգլիացի պաշտօեաները. Չէմպըրլէյն մերժեց եւ յաղթանակը տարաւ։ Նոյն անհամաձայնութիւնը՝ Այլ քանդրիա անցք. ժառտանուեր դրկելու, Եգիպտոսի մէջ հրապարակային հաւաքոյթները արգիլելու եւլն.ի առթիւ։

Այս պայմաններուն տակ Հէնտըրսըն հեռագրեց մարզպանին որ Լոնտոն գայ եւ կացութեան մասին զեկոյց տայ իրեն։ Լորտ Լօյտ Լոնտոն հասաւ յուլիս 19 ուրբաթ օր, սակայն նախարարը տեսնելու գնաց երեքշաբթի օր միայն ու գրաւոր հրաժարական տուաւ, որ ընդունուեցաւ։

Հէնտըրսըն աւելցուց թէ նախարարական յանձնաժողով մը կազմուած է՝ զբաղելու համար եգիպտական խնդրով եւ իր առաջին նիստը պիտի գումարէ երկուշաբթի։ Չըրչիլ ուժգին յարձակում գործեց կառավարութեան վրայ։ Ի վերջոյ Մաքտոնըլտ յուզիչ կոչ մը ուղղեց՝ խորհրդարանին՝ փութ վէճերով չծանրացնել կացութիւնը Եգիպտոսի, որ արդէն շատ կնճռոտ է։ Իր ճառը բոլորի ջերմ ծափերուն արժանացաւ։

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ՓԱՐԻԶԻ ամերիկեան դեսպան նշանակուեցաւ Նիւ Ճըրզիի հանրապետական ծերակուտական Ուոլթըր Իվընս Էճ, հանգուցեալ Մարյըն Հէյրիքի տեղ։

ԱՄԵՐԻԿԱՑԻ երկու օդանաւորդներ՝ Ճէքսըն եւ Օ՚Պրայըն տեւողութեան մրցանիշը կոտրեցին առջի օր Սէյնթ Լուիզի շըրջանին մէջ, օդին մէջ մնալով 300 ժամ։ Վերջին մրցանիշն էր 246 ժամ 43 վայրկեան։ Ճէքսըն եւ Օ՚Պրայըն դեռ ցամաք չեն իջած։

ՊՈՒԼԿԱՐԻԱՅԷՆ կը հեռագրեն թէ 16 օրէ ի վեր սաստիկ տաք կ՚ընէ երկրին մէջ։ Սթարա-Զակօրայի մէջ հրետանիի ռազմանիւթի մթերանոց մը կրակ առաւ։ Զինուոր մը վիրաւորուեցաւ։ Ուրիշ կորուստ չկայ։

---



---



---



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: E. SOUVIGNY

